Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 5 ՄԱՐՏ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս 2—52—78։


# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ՄԱՆՐԱԾԱԽ ԳՆԵՐԻ ՆՈՐ ԻՋԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

*1949 թվականին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ասպարեզում ձեռք բերված նոր հաջողությունների, աշխատանքի արտադրողականության աճման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կապակցությամբ Սովետական կառավարությունը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն հնարավոր համարեցին 1950 թվականի մարտի 1-ից իրագործել մասսայական սպառման պարենային ու արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների նոր, թվով երրորդ, իջեցում։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը գտնում են, որ պետական առևտրի ասպարեզում գների նոր իջեցման հետևանքով բնակչությունը կշահի տարեկան առնվազն 80 միլիարդ ռուբլի։*

*Բացի դրանից, նկատի ունենալով այն, որ պետական առևտրի ասպարեզում գների իջեցման ազդեցության տակ գների մոտավորապես նույնպիսի իջեցում տեղի կունենա կոլխոզային շուկայում և կոոպերատիվ առևտրի մեջ, բնակչությունը կստանա առնվազն 30 միլիարդ ռուբլու լրացուցիչ շահում։*

*Հետևաբար, գների նոր իջեցումից բնակչության*

ընդհանուր շահումը կկազմի առնվազն 110 միլիարդ ռուբլի։

Տարակույս չկա, որ գների նոր իջեցման հետևանքով.

1. նորից զգալիորեն կբարձրանա ռուբլու գնողական ուժը.

2. սովետական ռուբլու կուրսն էլ ավելի կբարելավվի օտարերկրյա վալյուտաների կուրսի համեմատությամբ.

3. տեղի կունենա բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձի հետագա լուրջ բարձրացում.

4. լրջորեն կբարելավվի կենսաթոշակառուների և թոշակառուների դրությունը, քանի որ գների իջեցումով անփոփոխ են մնում կենսաթոշակների և թոշակների չափերը.

5. տեղի կունենա գյուղացիների եկամուտների հետագա լուրջ բարձրացում՝ էժանացած արդյունաբերական ապրանքների գնման համար գյուղացիական ծախսերի զգալի կրճատման հետևանքով և այն բանի շնորհիվ, որ անփոփոխ են մնում հողագործության ու անասնաբուծության մթերքների մթերման պետական գները։

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն որոշում են.

1. 1950 թվականի մարտի 1-ից պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գները իջեցնել հետևյալ չափերով.

Հաց և բուլկեղեն

| | |
|---|---|
| Տարեկանի գործարանային հաց և տարեկանի ու ցորենի խառն ալյուրից պատրաստված հացի այլ տեսակներ | 25,9%-ով |
| Ցորենի հաց տեսակավոր ալյուրից | 30,0 » |
| Բուլկի, բարանկի, սուշկի, սուխարի և ցորենի տեսակավոր ալյուրից պատրաստված այլ բուլկեղեն | 30,0 » |
| Դրոժ | 20 » |



Ալյուր

| | |
|---|---|
| Ցորենի պաստառային ալյուր և տարեկանի պաստառային ալյուր | 25,0%-ով |
| Ցորենի առաջին ու բարձր տեսակի ալյուր | 30,0 » |
| Ցորենի կրուպչատկա ալյուր | 21,0 » |
| Ցորենի մյուս տեսակի ալյուրներ, ինչպես նաև եգիպտացորենի, գարու և այլ ալյուր | 25,0 » |

Կրուպա, բրինձ, բակլայաբույսեր

| | |
|---|---|
| Կորեկաձավար | 14,8%-ով |
| Գրեչիխա, այլ կրուպաներ, սիսեռ և բակլայաբույսեր | 20,0 » |
| Բրինձ | 12,0 » |

Մակարոնեղեն

| | |
|---|---|
| Մակարոն | 25,0%-ով |
| Լապշա | 25,0 » |

Սննդի կոնցենտրատներ

| | |
|---|---|
| Միսերի սուպ-պյուրե և պշենոյի կաշա յուղով | 15,2%-ով |
| Մանկական ալյուր | 14,5 » |
| Կարտոֆիլի օսլա | 14,6 » |
| Տոլոկնո, հերկուլես, եգիպտացորենի փաթիլներ, սագո, չոր կիսելներ, սննդային այլ կոնցենտրատներ | 15,0 » |

Հացահատիկ և փուրաժ

| | |
|---|---|
| Տարեկան, ցորեն, գարի և հացահատիկի այլ տեսակներ | 20,0%-ով |
| Վարսակ | 22,7 » |
| Թեփ | 22,0 » |
| Կոմբինացված կեր | 25,0 » |
| Բամբակի քուսպ | 25,0 » |
| Այլ տեսակի քուսպ և շրոտ | 22,0 » |
| Խոտ | 25,0 » |

### Միս և մսեղեն

| | |
|---|---|
| Միջին և բարձր գիրության տավարի միս | 24,0%-ով |
| Միջինից ցածր գիրության տավարի միս | 30,0 » |
| Միջին և բարձր գիրության ոչխարի միս | 28,0 » |
| Միջինից ցածր գիրության ոչխարի միս | 35,0 » |
| Խոզի միս | 24,0 » |
| Թռչուն | 24,0 » |
| Ճագարի միս | 30,0 » |
| Միջին և բարձր գիրության այլ տեսակի մսեր | 24,0 » |
| Միջինից ցածր գիրության այլ տեսակի մսեր | 30,0 » |
| Գլուխ, ոտ, լյարդ և այլ ենթամթերքներ | 24,0 » |
| Երշիկ | 24,0 » |
| Սոսիսկա և սարդելկա | 30,0 » |
| Ապուխտ | 27,0 » |
| Մոսկովյան կոտլետ | 35,0 » |
| Կուլինարիայի այլ տեսակներ | 25,0 » |
| Մսի և մսաբուսական պահածոներ | 25,0 » |

### Ձուկ և ձկնեղեն

| | |
|---|---|
| Պաղեցրած ու սառեցրած սուդակ | 10,2%-ով |
| Օսետրինա | 10,0 » |
| Հեռավոր արևելյան լոսոս, նավագա և սկումբրիա | 30,0 » |
| Հյուսիսային նավագա | 25,0 » |
| Աղ դրած սյոմգա և լոսոսինա | 20,0 » |
| Լոսոսի, սիգայի և օսետրայի բալիկ | 30,0 » |
| Խաղաղ-օվկիանոսյան սելդ | 30,0 » |
| Կասպիական, օլյուտորյան, Ժուպանովյան և այլ սելդ | 10,1 » |
| Ձկան ֆիլե | 25,0 » |
| Արևախաշ վոբլա | 10,0 » |
| Արևախաշ և չորացրած բիչկի | 30,0 » |
| Աղ դրած տյուլկա | 12,5 » |
| Արևախաշ տյուլկա և մանրուք | 25,0 » |
| Այլ տեսակի ձուկ | 10,0 » |
| Սև ձկնկիթ | 30,0 » |



| | |
|---|---|
| Կարմիր ձկնկիթ | 25,0%-ով |
| Յուղով պատրաստած պահածոներ | 25,0 » |
| Լոսոսի պահածոներ սեփական հյութով, տրեսկայի և նալիմի լյարդ, տրեսկա և կամբալա յուղով | 35,0 » |
| Ձկան այլ պահածոներ | 30,0 » |

### Յուղեղեն, պանիր և կաթնամթերքներ

| | |
|---|---|
| Կենդանական յուղ | 30,0%-ով |
| Սովետական, շվեյցարական, հոլանդական, հալովի և այլ պանիրներ | 20,0 » |
| Տեղական պանիրներ և բրինզա | 15,0 » |
| Անքաշ կաթ, սեր, մածուն և կեֆիր | 10,0 » |
| Սմետան, տվորոգ, սիրկի և այլ կաթնամթերքներ | 20,0 » |
| Կաթնեղենի պահածոներ, չոր կաթ | 15,0 » |
| Պաղպաղակ | 20,0 » |
| Բուսական յուղ | 10,0 » |
| Մարգարին | 35,0 » |
| Սննդի հալած և հում խոզաճարպ | 18,0 » |
| Վիտամինացված բժշկական ճարպ | 25,0 » |
| Մայոնեզ և այլ տեսակի սոուսներ | 20,0 » |

### Ձու և ձվի փոշի

| | |
|---|---|
| Ձու | 15,0%-ով |
| Ձվի փոշի | 20,0 » |

### Շաքար, հրուշակեղեն և նպարեղեն ապրանքներ

| | |
|---|---|
| Շաքարավազ | 15,0%-ով |
| Շաքար-ռաֆինադ | 12,0 » |
| Սառնաշաքար մոմպասյե և բաց կարամել | 8,0 » |
| Փաթեթված կարամել առանց կակաո մթերքի | 11,0 » |
| Փափուկ կոնֆետներ, շոկոլադ, մարմելադ, պեչենի և պրյանիկ | 20,0 » |
| Կակաո, պիրոժնի և տորթ | 16,7 » |

| | |
|---|---|
| Հրուշակեղեն այլ ապրանքներ (վաֆլի, կեքս, ռուլետ, արևելյան քաղցրավենիք դիետիկ, բուժական և այլն) | 18,0%-ով |
| Մուրաբա, ջեմ, պովիդլո և ժելե | 25,0 » |
| Վիտամիններ | 20.0 » |
| Մանրացրած և եփված աղ | 40,0 » |
| Քար աղ | 50,0 » |
| Բնական թեյ | 10,0 » |
| Թեյի, սուրճի և կակաո խմիչքներ | 18,0 » |

Օղի, լիկյոր և գինի

| | |
|---|---|
| Օղի | 16,7%-ով |
| Լիկյորներ | 25,0 » |
| Քաղցր մրգօղի, թրմօղի և կրեմներ | 18,0 » |
| Դառն թրմօղի | 20,0 » |
| Կոնյակ | 25,0 » |
| Սեղանի գինի | 35,0 » |
| Թունդ և դեսերտային գինիներ միջին հաշվով | 49,0 » |
| Սովետական շամպայն | 16,2 » |
| Ցիմլյանական | 30,0 » |
| Մրգահատապտղային գինիներ | 20,0 » |

Գարեջուր, մրգաջրեր և կվաս

| | |
|---|---|
| Գարեջուր | 30,0%-ով |
| Բնական հյութերով և սիրոպներով՝ խմիչքներ | 16.0 » |
| Հացի կվաս | 22,0 » |
| Այլ խմիչքներ | 20,0 » |
| Խմելու սոդա | 21,0 » |

Մրգեր

| | |
|---|---|
| Խնձոր և տանձ | 20,0%-ով |
| Խաղող | 25,0 » |
| Մանդարին և նարինջ | 15,0 » |
| Ջոր միրգ և ընկույզներ | 20,0 » |
| Մրգի պահածոներ և հյութեր | 30,0 » |
| Սառեցրած դեղձ, ծիրան, սալոր, սև սմորոդինա և այլն՝ շաքարով | 20,0 » |



| | |
|---|---|
| Սառեցրած այլ մրգեր և պտուղներ՝ առանց շաքարի | 30,0%-ով |

Կարտոֆիլ և բանջարեղեն

| | |
|---|---|
| Կարտոֆիլ | 10.0%-ով |
| Կաղամբ | 14,7 » |
| Գազար | 14,7 » |
| Ճակնդեղ | 10,0 » |
| Կանաչ սիսեռ | 32,0 » |
| Այլ բանջարեղեն | 10,0 » |
| Թթու կաղամբ | 16,7 » |
| Աղ դրած, թթու դրած և թթվեցրած այլ բանջարեղեններ | 15,0 » |
| Չորացրած կարտոֆիլ | 11,1 » |
| Չորացրած կաղամբ | 20,8 » |
| Այլ տեսակի չորացրած բանջարեղեն | 13.0 » |
| Տոմատի հյութ փակ | 32,0 » |
| Բակլաջանի իկրա, վարունգ, թթվեցրած և այլ բանջարեղենի պահածոներ | 20,0 » |
| Սառեցրած կանաչ սիսեռ | 35,7 » |
| Սառեցրած այլ բանջարեղեններ | 30,0 » |

Գործվածքներ

| | |
|---|---|
| Բամբակեղեն գործվածքներ | 15,0%-ով |
| Զուտ բրդեղեն և կիսաբրդեղեն կամվոլային գործվածքներ | 12,0 » |
| Զուտ բրդեղեն նուրբ մահուդյա գործվածքներ | 12,0 » |
| Կիսաբրդեղեն նուրբ մահուդյա գործվածքներ | 22,0 » |
| Կոպիտ մահուդյա բրդեղեն գործվածքներ | 24,0 » |
| Կիսամետաքսյա գործվածքներ և արհեստական մետաքսի գործվածքներ | 12.0 » |
| Վուշեղեն գործվածքներ | 15,0 » |

Պատրաստի հագուստ, տրիկոտաժ, գլխարկ

| | |
|---|---|
| Վերարկու, կոստյում, դեյրա և բրդեղեն գործվածքներից այլ հագուստեղեն, կամվոլե և զուտ բրդեղեն նուրբ մահուդյա գործվածքներ | 10,0%-ով |

Կիսաբրդեղեն նուրբ մահուդյա գործվածքներից 20,0%-ով
Կոշտ բրդյա գործվածքներից 22,0 »
Կիսամետաքսյա գործվածքներից և արհեստական մետաքսյա գործվածքներից դեյրա, բլուզկա, սպիտակեղեն և այլ հագուստեղեն 10,0 »
Բամբակեղեն գործվածքներից վերարկու, կոստյում, դեյրա, սպիտակեղեն և այլ հագուստեղեն 13,0 »
Վուշեղեն գործվածքներից դեյրա, բլուզկա, սպիտակեղեն և այլ հագուստեղեն 14,0 »
Բամբակեղեն, կիսամետաքսյա և վիսկոզե տրիկոտաժ 10,0 »
Տրիկոտաժի, վիսկոզե, ամառային ձեռնոցներ կոկիկ կտավից 30,0 »
Կապրոն թելից գուլպա 25,0 »
Բամբակե, մետաքսե և բրդե գուլպա 15,0 »
Գործվածքից պատրաստած կեպի, ֆուրաժկա և այլ գլխարկ 25,0 »
Զուտ բրդե գործվածքներից տղամարդու կեպի 35,0 »
Ֆետրե, աղվամազավոր և բրդե շլյապաներ, բերետներ, թասակներ 10,0 »
Մուշտակե օձիք և գլխարկ 10,0 »
Բրդե վերմակ 20,0 »
Հագուստի անհատական պատվեր առաջին կարգի ատելյեյում 10,0 »
Հագուստի անհատական պատվեր երկրորդ կարգի ատելյեյում և արհեստանոցներում 15,0 »

### Կոշիկ

Կաշվե կոշիկ 15,0%-ով
Տեքստիլ և կոմբինացված կոշիկ 20,0 »
Ցուֆտե բոտինկաներ տղամարդու ու կանանց կիսակոշիկներ ու բոտինկաներ 25,0 »



Մանկական ռետինե կոշիկ 15,0%-ով
Տղամարդու և կանանց ռետինե կոշիկ 10,0 »
Թաղիքե կոշիկ 25,0 »

### Գալանտերեայի ապրանքներ և ոսկերչական առարկաներ

Տեքստիլ գալանտերեա, բամբակեղեն, բրդեղեն գործվածքներից, արհեստական մետաքսից և կիսամետաքսյա գործվածքներից 20,0%-ով
Գալանտերեա կաշվից և կաշվի փոխարինիչներից 20,0 »
Մետաղեղեն գալանտերեա 15,0 »
Ֆաբրիկային արտադրության ժանյակ ձեռագործ և տյուլ 12,0 »
Ժանյակային և գարդինո-տյուլային ապրանքներ հատով 30,0 »
Ձեռքի կարի ասեղներ 20,0 »

### Դուխիներ, օդեկոլոն և նվիրատուփեր

«Քամելիա», «Մագնոլիա», «Բելայա նոչ», «Բելայա սիրեն» և «Պոդարոչնիե» 15,0%-ով
Պարֆյումերային-կոսմետիկ այլ ապրանքներ 25,0 »
Թել և թելեղեն 20,0 »
Ոսկե և արծաթե կշռովի իրեր 10,0 »
Ոսկերչական իրեր և ոսկերչական մետաղեղեն գալանտերեա 15,0 »
Տարբերանշաններ գործվածքներից 20,0 »

### Կուլտուրական ապրանքներ և խաղալիքներ

Ռադիոընդունիչներ 15%-ով
Ռեպրոդուկտորներ, ռադիոլամպեր և այլ ռադիոապրանքներ 20,0 »
Ֆոտոապարատներ և այլ ֆոտոապրանքներ 20,0 »
Թատերական հեռադիտակներ 25,0 »

| | |
|---|---|
| Պատեֆոններ, պատեֆոնի պահեստի մա- | 25,0%-ով |
| սեր, ակորդեոններ և բայաններ | 20,0 » |
| Գարմոններ | 16,7 » |
| Պատեֆոնի պլաստինկաներ | 10,0 » |
| Դաշնամուր | 10,0 » |
| Գրելու թուղթ | |
| Դպրոցական տետրեր և թղթե ու խավա- | 20,0 » |
| քարտե իրեր | 30,0 » |
| Գոտովալնիներ | |
| Գրամեքենաներ և գրամեքենայի պահեստի | 22,0 » |
| մասեր | |
| Դպրոցական գրենական պիտույքներ և | |
| գրասենյակային ապրանքներ, բացի | |
| գրչածայրերից ու գրաֆիտե մատիտներից | 20,0 » |
| | 30,0 » |
| Ինքնահոս գրիչներ | 10,0 » |
| Ռետինե խաղալիքներ | 20,0 » |
| Ցելյուլոիդի խաղալիքներ | |

Ամանեղեն

| | |
|---|---|
| Հախճապակե ու ճենապակե ամանեղեն և | |
| հախճապակե գեղարվեստական իրեր | 20,0%-ով |
| Թեյի բաժակներ և սորտային ու տնտե- | 15,0 » |
| սական այլ ապակյա ամանեղեն | |
| Առաջին ձուլվածքներից ալյումինե ամանեղեն | 15,0 » |
| Երկրորդ ձուլվածքից ալյումինե ամա- | 30,0 » |
| նեղեն | |
| Երկաթե էմալապատ և երկաթե ցինկապատ | 15,0 » |
| ամանեղեն | 15,0 » |
| Սև չուգունե ամանեղեն | 10,0 » |
| Չուգունե էմալապատ ամանեղեն | |
| Չժանգոտվող պողպատե և մելխիորե | 20,0 » |
| ամանեղեն | 15,0 » |
| Լատունե ամանեղեն | |

Տնտեսական գործածության ապրանքներ

| | |
|---|---|
| | 40,0%-ով |
| Լվացքի օճառ | 50,0 » |
| Ձեռքի օճառ | |



| | |
|---|---|
| | 10,0%-ով |
| Նավթ | |
| Կարի մեքենա և կարի մեքենայի | 20,0 » |
| պահեստի մասեր | 20,0 » |
| Լատունե ինքնաեռ | 11,0 » |
| Էլեկտրալուսավորման լամպ | 25,0 » |
| Էլեկտրաարդուկ | 20,0 » |
| Էլեկտրական փոշեհավաք | 20,0 » |
| Այլ տեսակի էլեկտրական ապրանքներ | |
| Մսաղաց, կերոսինկա, կերոգազ, պրիմուս և | 20,0 » |
| դրանց պահեստի մասեր | |
| Դանակ-պատառաքաղ չժանգոտվող | 30,0 » |
| պողպատից | 12,0 » |
| Դանակ-պատառաքաղ կոփված պողպատից | |
| Պլիտայի վրա և ածուխով տաքացվող | 20,0 » |
| արդուկներ | 15,0 » |
| Պարան, շպագատ և շնուր | 15,0 » |
| Թամբագործական ապրանքներ | 10,0 » |
| Մետաղե նիկելապատ մահճակալներ | 20,0 » |
| Մետաղե այլ տեսակի մահճակալներ | 25,0 » |
| Կողպեքներ | 20,0 » |
| Երկաթեղեն | |
| Կլեոնկա, դերմատին, գրանիտոլ, լեդերին | 10,0 » |
| և ռետինապատ գործվածքներ | |
| Ֆաբրիկային արտադրության և ձեռքի պատ- | |
| րաստած գորգեր ու գորգեղեն | 20,0 » |
| Լուսամփոփներ՝ գործվածքից և թղթից | 25,0 » |
| Աղվամազային իրեր | 15,0 » |
| Բամբակ | 20,0 » |
| Պլաստմասայե իրեր | 20,0 » |

Շինանյութեր

| | |
|---|---|
| Մեխ | 20,0%-ով |
| Ցեմենտ և շիֆեր | 20,0 » |
| Տոլ ռուբերոիդ և այլ փափուկ ծածկ | 20,0 » |
| Պատուհանի ապակի | 20,0 » |
| Սպիրտային լաքեր, պոլիտուրա և ներկեր | 20,0 » |

| | |
|---|---|
| Լակեր և այլ ներկեր | 10,0%-ով |
| Պաստառ | 20,0 » |

### Հեծանիվ, մոտոցիկլետ, ժամացույց, ծխախոտ, լուցկի և այլ արդյունաբերական ապրանքներ

| | |
|---|---|
| Հեծանիվ և դրանց պահեստի մասեր | 20%-ով |
| Ի. Ժ—350 տիպի ճանապարհային մոտոցիկլետներ և դրանց պահեստի մասեր | 20,0 » |
| Այլ տեսակի մոտոցիկլետներ և դրանց պահեստի մասեր | 25,0 » |
| Որսորդական հրացաններ | 12,0 » |
| Հեծանվադող, հեծանվակամերա, ֆուտբոլային, բասկետբոլային, վոլեյբոլային պոկրիշկա և կամերա, թենիսային գնդակներ | 10,0 » |
| Խոզիկ-ժամացույցներ՝ փայտե կորպուսով | 11,0 » |
| Խոզիկ-ժամացույցներ՝ մետաղե կորպուսով | 28,0 » |
| Ջեռքի, գրպանի և այլ ժամացույցներ | 20,0 » |
| Խաղաթուղթ | 20,0 » |
| Կայծքար | 40,0 » |
| Գլանակ, սիգարետ, ծխախոտ և մախորկա | 20,0 » |
| Լուցկի | 25,0 » |

2. Համապատասխանորեն գներն իջեցնել ռեստորաններում, ճաշարաններում, թեյարաններում և հասարակական սննդի այլ ձեռնարկություններում։

ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀ՝ **Ի. ՍՏԱԼԻՆ**

ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝ **Գ. ՄԱԼԵՆԿՈՎ**

28 փետրվարի 1950 թ.

---

## ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

1950 թվականի մարտի 12-ին համաժողովրդական տոնի օր է՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների օրը։ Սովետական ժողովուրդը իր երկրի բարձրագույն օրգանի ընտրությունները դիմավորում է քաղաքական, արտադրական ու հայրենասիրական նոր, հուժկու վերելքով։ Նախընտրական օրերը մեր երկրում վերածվեցին սովետական ժողովրդի կողմից բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և հարազատ Ստալինի նկատմամբ անհուն սիրո և նվիրվածության հզոր ցույցի։

Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի պայքարի և հաղթանակների բոլոր փուլերում Սովետական Միության աշխատավորները հանձին պարտիայի տեսել են իրենց ավանգարդը, իրենց առաջավոր ջոկատը, որն անշեղորեն պայքարում է ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցության է՛լ ավելի բարձրացման համար։

ՍՍՌՄ ժողովուրդները միշտ լիակատար վստահությամբ են իրենց բախտը հանձնել սիրելի կոմունիստական պարտիայի ձեռքը և կոմունիստական պարտիան միշտ ամենածանր ու կրիտիկական պահերին պատվով է կատարել դժվարագույն խնդիրները և սովետական ժողովրդին հասցրել է պատմական նոր հաղթանակների։ Բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները աննախընթաց հաջողություններ են ձեռք բերել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման ստալինյան հնգամյակների տարիներին։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ սովետական ժողովրդի Հայրենական Մեծ պատերազմը

հանդիսացավ ամենամեծ և դաժան փորձությունը մեր երկրի պատմության մեջ։ Գերմանական ֆաշիստները, հավաքելով միջազգային ռեակցիայի բոլոր ուժերը, մոբիլիզացնելով Եվրոպայի ամբողջ էկոնոմիկան, հանկարծակի ուխտադրժորեն հարձակվեցին մեր երկրի վրա, սկսեցին հրկիզել և ավերել ՍՍՌՄ արևմտյան մարզերի քաղաքներն ու գյուղերը, ոչնչացնել խաղաղ բնակչությանը։

Մեր Հայրենիքի համար այդ ահեղ վտանգի օրերին սովետական ժողովուրդն իր հայացքը ուղղել էր դեպի կոմունիստական պարտիան, դեպի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը։ Մեր ժողովրդի ճակատագիրը ամբողջովին կախված էր սովետական կառավարությունից, Լենինի-Ստալինի պարտիայից։ Սովետական ժողովուրդը երկրորդ համաշխարհային պատերազմից դուրս եկավ խոշորագույն հաղթանակով։ Նա ոչ միայն պաշտպանեց իր ազատությունն ու անկախությունը, այլև Եվրոպայի ժողովուրդներին ազատագրեց ֆաշիստական ստրկությունից։ Պատերազմի ընթացքում բոլշևիկների պարտիան է՛լ ավելի հարազատ դարձավ ժողովրդին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման և անցկացման օրերին է՛լ ավելի մեծ ուժով դրսևորվեց սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, նրա համախմբվածությունը կոմունիստական պարտիայի և ընկեր Ստալինի շուրջը։ Սովետական մարդկանց ակտիվ մասնակցությունը նախընտրական կամպանիային, այն հանգամանքը, որ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուների առաջադրումը վերածվեց վիթխարի ցույցի, նոր ուժով է դրսևորում սովետական սոցիալիստական դեմոկրատիայի մեծ առավելությունները։

Կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկը պատմականորեն ստեղծվել է սովետական սոցիալիստական հասարակակարգի պայմաններում և նրա գոյությունը հնարավոր է միայն մեր երկրում։ Քաղաքական պարտիայի և անկուսակցականների բլոկը միանգամայն անհնարին գործ է դասակարգային հա-



կասություններով բզկտված բուրժուական երկրների ընտրական կամպանիաների պրակտիկայում։

Սովետական մարդիկ իրենց բոլոր հաջողությունների համար պարտական են Լենինի-Ստալինի մեծագույն պարտիային, որը անխոնջ կերպով պայքարում է մեր երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման համար, Սովետական Միության աշխատավորների նյութական և կուլտուր-կենցաղային պայմաններն ամեն կերպ բարելավելու համար։ Դրա վառ արտահայտությունը ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ մարտի 1-ից գործողության մեջ մտած որոշումն է՝ պարենային և արդյունաբերական ապրանքների գների նոր իջեցման մասին։

Պարտիայի և ժողովրդի սերտ կապի վառ արտահայտությունն է հանդիսանում կոմունիստների և անկուսակցականների բլոկը ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններում։

Բոլոր ընտրողներին՝ բանվորներին ու բանվորուհիներին, գյուղացիներին ու գեղջկուհիներին, Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, սովետական ինտելիգենցիային ուղղված ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Դիմումի մեջ ասված է. «Առաջիկա ընտրություններում, ինչպես և 1937 ու 1946 թվականների ընտրություններում, Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիան հանդես է գալիս անկուսակցական բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հետ միասնական բլոկ, սերտ դաշինք կնքած»։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներն ընդհանուր են,- ինչպես կոմունիստների, այնպես էլ անկուսակցականների համար, որովհետև նրանք առաջադրվել են թե՛ կոմունիստական պարտիայի, պրոֆեսիոնալ միությունների, կոմերիտմիության և այլ կազմակերպությունների ու աշխատավորների ընկերությունների և թե՛ անկուսակցական մասսաների կողմից։

Անցած ընտրությունների ժամանակ կոմունիստների և անկուսակցականների Ստալինյան բլոկի կողմից

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրվածների գործունեությունը ցույց տվեց, որ սովետական ժողովրդի բոլոր հույսերը լիովին արդարացան։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններից հետո անցած պատմական կարճ ժամանակամիջոցում սովետական ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռք բերեց հսկայական նվաճումներ։ Հաջողությամբ է կենսագործվում մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը, որը գծել է հանճարեղ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը 1946 թվականի փետրվարի 9-ի իր պատմական ճառում։

Գերագույն Սովետի ընտրական կամպանիան թևակոխել է իր ամենավճռական էտապը։ Մեր ագիտատորները, որոնք բոլշևիկյան լայն ագիտացիա են մղում կոմունիստների և անպարտիականների Ստալինյան բլոկի թեկնածուների օգտին, այս օրերին պետք է է՛լ ավելի ուժեղացնեն քաղաքական ագիտացիան, յուրաքանչյուր ընտրողի հանգամանորեն պարզաբանեն դեպուտատության թեկնածուների կյանքն ու գործունեությունը, մեր Հայրենիքի ձեռք բերած վիթխարի նվաճումները։

Դեպուտատության թեկնածուի օգտին ագիտացիա մղելիս շատ կարևոր է, որպեսզի ագիտատորները խոսելով կոմունիստների և անպարտիականների Ստալինյան բլոկի թեկնածուների մասին, նշեն, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության համար իրենց առաջադրած թեկնածուն կոմունիստների և անպարտիականների ընդհանուր բլոկի թեկնածուն է, և, որ ձայն տալով տվյալ թեկնածուի օգտին, նրանք ձայն են տալու կոմունիստների և անպարտիականների անխորտակելի բլոկի թեկնածուների օգտին։

Կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը արդյունավետ է լինում, երբ այն կապակցվում է ռեսպուբլիկայի, տվյալ շրջանի, կոլխոզի, սովխոզի, մեքենա-տրակտորային կայանի, ձեռնարկության ու հիմնարկի կոնկրետ խնդիրների հետ։ Ագիտացիան է՛լ ավելի կենդանի և հետաքրքիր է դառնում, երբ ագիտա-



տորը, պարզաբանելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ բոլոր ընտրողներին ուղղված Դիմումը, կոնկրետացնում է առանձին հարցերը՝ տեղական կյանքից վերցրած թվերով ու փաստերով։ Կոլխոզներում, սովխոզներում ու ՄՏ կայաններում ներկայումս օրվա հրատապ հարցը գարնանացանի կամպանիային օրինակելիորեն նախապատրաստվելու հարցն է։

Ագիտատորները միաժամանակ, իրենց անձնական օրինակով պետք է նախընտրական սոցիալիստական մրցություն կազմակերպեն գարնանացանի աշխատանքների հաջող նախապատրաստման համար։

Ձեռնարկություններում ու հիմնարկներում ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքների կազմակերպումից բացի, անհրաժեշտ է ամբողջ հիմնական ագիտացիոն-մասսայական աշխատանքը կենտրոնացնել ագիտպունկտերում և ընտրական տեղամասերում, որպեսզի ագիտացիոն աշխատանքի մեջ ընդգրկվեն բոլոր ընտրողները։

Ագիտատորները ուշադիր կերպով պետք է ունկընդրեն ընտրողների ձայնին. նրանց հետաքրքրող բոլոր հարցերին տան սպառիչ պատասխաններ։

Ագիտացիոն-մասսայական ամբողջ աշխատանքի, բոլոր ագիտատորների հիմնական խնդիրն այն է, որպեսզի ապահովվի բոլոր ընտրողների մասնակցությունը ընտրություններին՝ առանց բացառության, որպեսզի չլինի ոչ մի ընտրող, որը չօգտագործի մեր պետության գերագույն օրգանի ընտրություններին մասնակցելու իր պատվավոր իրավունքը և որպեսզի ընտրություններից դուրս չմնա և ոչ մի ընտրող։ Այդ բանին կարելի է հասնել՝ լայնորեն ծավալելով ագիտացիոն-մասսայական աշխատանքը բոլոր ընտրողների մեջ։ Ագիտատորը աչքաթող չպետք է անի որ ոչ բոլոր ընտրողներն են, որ ստույգ գիտեն ընտրությունների օրն ու տեղը։ Ուստի ագիտատորները իրենց զրույցների ու ելույթների ընթացքում ընտրողներին պետք է հիշեցնեն, որ ընտրությունները տեղի են ունենալու 1950 թվականի մարտի 12-ին, ընտրական տեղամասում, որը գտնվում է այսինչ

շենքում, և որ քվեարկությունը կատարվելու է մարտի 12-ին, տեղական ժամանակով առավոտյան ժամը 6-ից մինչև երեկոյան ժամը 12-ը։ Յուրաքանչյուր ագիտատոր պետք է հասնի այն բանին, որպեսզի ընտրությունններին ակտիվորեն մասնակցեն իրեն ամրացված տեղամասի բոլոր ընտրողները։

Կասկած չկա, որ մարտի 12-ի օրը. մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, կդարձնեն համաժողովրդական տոնի օր, նորից կցուցադրեն իրենց համախմբվածությունը Լենինի-Ստալինի մեծ պարտիայի շուրջը, հարազատ Սովետական կառավարության և անձամբ ժողովուրդների առաջնորդ, սիրելի հայր և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը։

1950 թվականի մարտի 12-ին բոլոր պարտիական ու անպարտիական ընտրողները մեկ մարդու պես կըգնան դեպի ընտրական քվեատուփերը և միահամուռ կերպով ձայն կտան կոմունիստների և անպարտիականների Ստալինյան անխորտակելի բլոկի թեկնածուների օգտին, համաժողովրդական առաջին թեկնածու, մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչ և ոգեշնչող ընկեր Ստալինի օգտին, հանո՛ւն մեր Հայրենիքի հետագա ծաղկման, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության նոր վերելքի, հանո՛ւն խաղաղության ամրապնդման՝ ամբողջ աշխարհում, հանո՛ւն կոմունիզմի կառուցման մեր երկրում։

1950 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 12-ԻՆ ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։

---

ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

## ՄԵՐ ԱՐԺԱՆԱՎՈՐ ԹԵԿՆԱԾՈՒՆ

Ազգությունների Սովետի Ալավերդու № 306 ընտրական օկրուգում ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրված անվանի ձուլող վարպետ Իսահակ Ալեքսանդրի Պապոյանը։ Ագիտատոր Աստուր Կիրակոսյանը ամեն օր ընտրողներին ծանոթացնում է դեպուտատության թեկնածու Պապոյանի կյանքի ու գործունեության հետ։ Նա իր զրույցները կապում է Պղնձաձուլական գործարանի աշխատանքի հետ։

***

— 1898 թվին մոտակա Ուզունլար գյուղից Ալավերդու պղնձահանքերն է գալիս 14 տարեկան պատանի Իսահակ Պապոյանը,—պատմում է ագիտատորը,—նրա ծնողներն աղքատ էին, իսկ Իսահակը ընտանիքի միակ հույսն էր։ Ծնողներն ստիպված նրան ուղարկել էին քաղաք, որպեսզի աշխատեր և իրենց ընտանիքը պահեր։

Բայց ինչպե՞ս կարող էր պահել նա ծնողներին, երբ օրական 12—14 ժամ աշխատելով ստանում էր չնչին կոպեկներ։ 1902 թվին Պապոյանը պղնձաձուլարանում դառնում է սևագործ բանվոր։ Աշխատանքը ծանր էր, պայմանները դժվար։ Պղինձը ձուլում էին փոքրիկ փուքսերով։ Իսահակն այդ ծանր պայմաններում աշխատում էր օրն ի բուն։

Ոչ Պապոյանը, ոչ էլ նրա հետ աշխատող բանվորները իրենց ձգտումներին չհասան ցարական իշխանության ու օտարերկրյա շահագործողների լծի տակ։ Նրանք իրենց արժանի տեղը ստացան միայն սովետական իշխանության շնորհիվ։

1925 թիվն էր։ Այդ ժամանակ մեր պարտիայի 14-րդ համագումարը խնդիր էր դրել զարգացնել երկրի ինդուստրիան։ Ալավերդում վերականգնվեցին պղնձահանքերն ու ձուլարանը։ Առաջինների թվում գործարան վերադարձավ Պապոյանը և շուտով նա դարձավ ձուլող վարպետ։

Երկրի ինդուստրացման թափին զուգընթաց սկսեց զարգանալ նաև Պղնձաձուլական գործարանը։ Կառուցվեց վատերժակետային վառարանը, ապա երկրորդը, երրորդը, շահագործման հանձնվեց Կոմերիտմիության անվան վառարանը։ Անհրաժեշտ էր ունենալ սեփական կադրեր, որակյալ բանվորներ։ Հին, փորձված վարպետների վրա լուրջ ու պատասխանատու խնդիր էր դըրվում, որակավորել բանվորներին, պատրաստել ձուլողների նոր բանակ։ Եվ ահա մյուս վարպետների հետ միասին, Պապոյանն էլ կպավ գործի։ Երկար չանցած գործարանը ունեցավ իր բանվորական կադրային բանակը։ Պատրաստվեցին նոր վարպետներ։ Բոլորդ ճանաչում եք Հակոբ Մոսինյանին, Իլյա Կոստանովին, Արամ Փերիխանյանին, Մանթաշ Սիմոնյանին, Արամ Ավետյանին և գործարանի մյուս ցեխերի շատ վարպետների, որոնք բոլորն էլ սովորել են վարպետ Պապոյանի մոտ և այժմ ղեկավարում են գործարանի ագրեգատները։

1935 թվին Սովետական Հայաստանի կառավարությունը գնահատելով Պապոյանի ժրաջան աշխատանքը, նրան շնորհեց Աշխատանքի Հերոսի կոչում։

Հաջորդ տարին գործարանում կառուցվեց տեխնիկայի վերջին խոսքով սարքավորված արտացոլիչ վառարանը, շահագործման հանձնվեց կոնվերտորի բաժանմունքը, նոր հնգամյակի տարիներին կառուցվեցին էլեկտրոլիզի, վայերբարսի ցեխերը։ Այդ բոլորի շնորհիվ չտեսնված չափերով բարձրացավ նաև գործարանի արտադրողականությունը։ 1925 թվի համեմատու-



թյամբ 1947 թվին արտադրողականությունն ավելացավ ավելի քան 31 անգամ։

—Դուք հիշում եք Հայրենական պատերազմի տարիները,— շարունակում է ագիտատորը,— թե որքան մեծ նշանակություն ուներ պղինձը այդ տարիներին, ամենքդ լավ գիտեք։ Բայց կոնվերտորի բաժանմունքը հետ էր մնում, գործարանը թերակատարում էր սև պղնձի ձուլման պլանները։ Գործարանի դիրեկցիան 1943 թվին Պապոյանին վատերժակետային վառարանի բաժանմունքից տեղափոխեց կոնվերտորի բաժանմունքը։ Նա կազմակերպեց ագրեգատի անխափան աշխատանքը, մոբիլիզացրեց կոլեկտիվը և շուտով կոնվերտորի բաժանմունքը հասավ առաջավորներին։ Այժմ, ստալինյան նոր հնգամյակի ավարտական տարում, Պապոյանը, կազմակերպելով սոցիալիստական մրցություն, ձգտում է իր ղեկավարած բաժանմունքում ժամկետից շուտ՝ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 30-րդ տարեդարձի օրը կատարել տարեկան պլանը։

Սովետական կառավարությունը բարձր է գնահատել Պապոյանի բազմամյա անբասիր աշխատանքը և նրա կուրծքը զարդարել է Լենինի շքանշանով։

Միայն սովետական իշխանության, բոլշևիկյան պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի հայրական հոգատարության շնորհիվ հնարավոր դարձավ զարգացնել ինչպես մեր երկրի արդյունաբերությունը, այնպես էլ աճեցնել մարդկանց, շարքային բանվորներին դարձնել արդյունաբերության հրամանատարներ։

Իր զրույցի վերջում ագիտատորը ցանկանում է լսել նաև ունկնդիրներին։ Առաջինը խոսում է տարեց բանվոր Եգոր Շահվերդյանը։ Նա, որ ավելի քան 40 տարի աշխատում է նույն գործարանում, պատմում է, թե ինչպես միայն սովետական իշխանության օրով է, որ բանվորները գնահատվում են, կարողանում են ազատորեն ընտրել ու ընտրվել կառավարության գերա-

գույն օրգաններում և օգտվում են Ստալինյան Կոնստիտուցիայով իրենց տրված բոլոր իրավունքներից։

Հետաքրքիր ելույթ է ունենում բանվոր Սողոմ Մայոյանը։ Նա 25 տարի աշխատում է Պապոյանի հետ, սովորել է նրա մոտ։

— Պապոյանի ամենամեծ արժանիքն այն է,— ասում է նա,— որ օգնում է բանվորներին մասնագիտանալու, միաժամանակ ինքը սովորում է նրանցից։ Վատերժակետային վառարանը այժմ ղեկավարում է Պապոյանի աշակերտ Հ. Մոսինյանը, կոնվերտորի բաժանմունքում հերթափոխության ցանկացած վարպետը կարող է փոխարինել ավագ վարպետին, իսկ շարքային ձուլողները կարող են դառնալ հերթափոխության վարպետ։ Նրա մյուս արժանիքն էլ այն է, որ ակտիվ հասարակական աշխատող է։ Երկրում կատարվող ամեն մի կարևոր իրադարձության մասին նա գրեթե առաջինն է հայտնում բանվորներին, վերջապես կարևոր է նրա խստապահանջությունը գործի համար, ավելի շատ պղինձ տալու համար։

Հետաքրքիր էպիզոդներ են պատմում վարպետ Պապոյանի աշխատանքային կյանքից նաև ընկերներ Ա. Մանուչարյանը, Ա. Վարդանյանը, Վ. Հարությունյանը, Ա. Մակիչյանը։ Բոլորը խոսում են Պապոյանի արժանիքների մասին և հայտնում իրենց ցանկությունը՝ մարտի 12-ին մեկ մարդու նման ձայն տալ իրենց ավագ վարպետի, պարտիականների ու անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածու Իսահակ Պապոյանի օգտին։

Վերջում ագիտատորն ասում է.

— Գնահատելով մեր վարպետին, մենք պետք է ավելի լայն ծավալենք սոցիալիստական մրցությունը, ավելի շատ արտադրանք տանք երկրին։ Դրանով ավելի կբարձրացնենք մեր կոլեկտիվի պատիվը, որի շարքերից թեկնածու ենք առաջադրել մեր երկրի գերագույն օրգանում ընտրելու համար։





**ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ**

# ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

Այս տարվա մարտի 12-ին տեղի են ունենալու ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները։ Դա մեծագույն քաղաքական իրադարձություն է սովետական ժողովրդի կյանքում։

Սովետական ընտրական սիստեմի կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ նա հետևողականորեն ու մինչև վերջ անց է կացնում ընտրական իրավունքի մեջ դեմոկրատիզմի սկզբունքները՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրություններ՝ փակ (գաղտնի) քվեարկությամբ։

Ընտրությունների ամբողջ կազմակերպումը, քվեարկության վայրը, ընտրական բյուլետենների հանձնումն ու լրացումը իրականում երաշխավորում է ընտրողների ընտրական իրավունքի այդ սկզբունքի իրագործումը պրակտիկայում, ապահովում է ընտրողների կամքի իսկական արտահայտությունը։

«ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրությունը», որը կազմված է Ստալինյան Կոնստիտուցիայի հիման վրա, որոշում և ապահովում է ընտրությունների քվեարկության կարգը։ Ամենից առաջ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները ընդհանուր են և կատարվելու են մեկ օրվա ընթացքում՝ մարտի 12-ին։ Ընտրություններն անց են կացվում ոչ աշխատանքային օր, որպեսզի ընտրողները հանգիստ իրադրության պայմաններում կարողանան իրականացնել Ստալինյան Կոնստիտուցիայով երաշխավորված ընտրելու իրենց մեծ իրավունքը։ Ընտրությունները կատարվելու են ընտրական տեղամասում և ընտրողները ձայն

են տալու ընտրությունների օրը, տեղական ժամանակով առավոտյան ժամը 6-ից մինչև գիշերվա ժամը 12-ը։

Ընտրությունների օրը, առավոտյան ժամը 6-ին տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը՝ հանձնաժողովի անդամների ներկայությամբ ստուգում է քվեատուփերը և սահմանված ձևով կազմված ընտրողների ցուցակի առկայությունը, ապա փակում ու կնքում է քվեատուփերը և ընտրողներին հրավիրում քվեարկության։

Յուրաքանչյուր ընտրող ունի մեկ ձայն և կարող է մասնակցել քվեարկությանը միայն մեկ ընտրական օկրուգում։ Ամեն մի ընտրող քվեարկում է անձամբ, դրա համար ներկայանալով քվեարկման վայրը։ Տեղամասային ընտրական հանձնաժողովին ընտրողը ներկայացնում է ինքնության վկայականը (անձնագիր, կոլխոզային գրքույկ, պրոֆմիութենական տոմս կամ ինքնությունը հաստատող որևէ այլ վկայական), ապա ընտրողների ցուցակում ստուգվելուց և նշվելուց հետո ստանում է սահմանված ձևի ընտրական բյուլետեններ։ Յուրաքանչյուր ընտրող միաժամանակ ստանում է երկու բյուլետեն, մեկը սպիտակ գույնի՝ Միության Սովետի ընտրությունների համար, երկրորդը կապույտ գույնի՝ Ազգությունների Սովետի ընտրությունների համար։

«Դեպուտատների ընտրության ժամանակ քվեարկությունը գաղտնի է»,—ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 140-րդ հոդվածում։ Այդ նպատակով ընտրությունների համար նշանակված շենքում բյուլետենների լրացման համար առանձնացվում են հատուկ սենյակներ կամ կահավորվում են առանձին խցիկներ։ Ընտրական բյուլետենների լրացման համար նշանակված սենյակում կամ խցիկում արգելվում է, բացի ընտրողից, որևէ մեկի, այդ թվում տեղամասային ընտրական հանձնաժողովի անդամների ներկայությունը։ Որևէ մեկի կողմից քվեարկության գաղտնիությունը խախտելու ամեն մի փորձ պատժվում է քրեական օրենքով։



Միայն այն ընտրողները, որոնք անգրագիտության կամ ֆիզիկական որևէ պակասության պատճառով հնարավորություն չունեն ինքնուրույն կերպով լրացնելու ընտրական բյուլետենները, կարող են ընտրական բյուլետենները լրացնելու նպատակով իրենց ցանկացած մի ուրիշ ընտրողի հրավիրել ընտրական սենյակ կամ խցիկը։

Ընտրությունների ազատությունն ու ընտրողների կամքի իսկական արտահայտությունն ապահովելու նպատակով, քվեարկության ժամանակ ընտրական շենքում չի թույլատրվում ընտրական ագիտացիա։

ՍՍՌՄ-ում այնքան մեծ է հոգատարությունը ընտրողների նկատմամբ, որ յուրաքանչյուր ընտրողի համար ամեն կերպ հեշտանում է իրականացնելու պետության կառավարմանն իսկապես մասնակցելու իր իրավունքը։ ՍՍՌՄ ընտրական օրենքը չի անտեսում նաև հիվանդներին։ Թույլ է տրվում ընտրական տեղամասեր կազմակերպել հիվանդանոցներում, ծննդատներում, սանատորիաներում, հաշմանդամների տներում։ Այն ընտրողի խնդրանքով, որը հիվանդության պատճառով ի վիճակի չէ քվեարկության համար ընտրական տեղամաս ներկայանալ, Տեղամասային ընտրական հանձնաժողովը կարող է հանձնաժողովի անդամին կամ դրա համար հատկապես լիազորված անձին փոքրացված չափի քվեատուփով ուղարկել այդ ընտրողի բնակարանը՝ ընտրական բյուլետեններ ընդունելու։

Մարտի 12-ին, գիշերվա ժամը 12-ին Տեղամասային ընտրական հանձնաժողովի նախագահը հայտարարում է քվեարկությունն ավարտված և հանձնաժողովն անցնում է քվեատուփերը բանալուն։

Ընկեր ընտրողնե՛ր։ 1950 թվականի մարտի 12-ին, մեկ մարդու նման գնանք դեպի քվեատուփերը։ Չպետք է լինի ոչ մի ընտրող, որը չօգտագործի ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ ընտրելու իր պատվավոր իրավունքը։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՆԱՅՔ

Հայ կինը դարեր շարունակ իր ուսերի վրա կրել է շահագործման ու ճնշման ծանրությունը։ Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը հայ կինը իրավազուրկ էր, անգրագետ։ Նա վերջին մարդն էր ընտանիքում և հասարակության մեջ։

Սովետական կարգերը վերածնեցին հայ ժողովրդին։ Ժողովրդի հետ վերածնվեց և հայ կինը։ Նա դարձավ տնտեսական և կուլտուրական կյանքի ակտիվ մասնակիցը, գրավեց իր բարձր և պատվավոր դիրքը Սովետական Հայրենիքում։ Անհուն երախտագիտությամբ և ջերմ սիրով լցվեց նրա սիրտը, անսահման անձնվիրությամբ ուղղվեց նրա հոգին դեպի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը, որի հայրական հոգատարությանն է նա պարտական իր երջանիկ կյանքի, իր երեխաների է՛լ ավելի սքանչելի ապագայի համար։

Սովետական երկրում աճելու և զարգանալու համար ունենալով բոլոր պայմանները, հայ կինն իր ստեղծագործական տաղանդը և անսպառ եռանդը նվիրաբերում է կոմունիզմի կառուցման վեհ գործին։ Նա ակտիվորեն աշխատում է ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ և կազմում է ռեսպուբլիկայում աշխատող բանվորների, ինժեներների, տեխնիկների ընդհանուր թվի ավելի քան 34 տոկոսը։

Սովետական հայրենասեր շատ կանայք աշխատելով ստախանովյան մեթոդներով, բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում ինքնարժեքը, խնայում հումքը և վառելանյութը, թողարկում են միայն բարձրորակ արտադրանք։ Հետպատերազմյան ստալինյան նոր հնգամյակը ժամկետից շուտ կատարե-



լու գործում կանայք պայքարում են առաջին շարքերում՝ ակտիվորեն մասնակցելով ծավալված սոցիալիստական մրցությանը։ Երևանի Կոշիկի 3-րդ ֆաբրիկայի ստախանովական բանվորուհի, Երևանի Քաղսովետի դեպուտատ Մարիամ Թումանյանը հնգամյա պլանը կատարել է 1948 թվին, արտադրական առաջադրանքները կատարում է 250—300 տոկոսով. նա մեծ հարգանք է վայելում կոլեկտիվում։

Ալավերդու Պղնձաձուլական գործարանի բանվորուհի Գ. Վանեսյանը արտադրական նորմաները կատարում է 200—250 տոկոսով, իր լավագույն աշխատանքի համար պարգևատրված է Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։ Երևանի աշխատավորությունը լավ է ճանաչում Մահուդի ֆաբրիկայի ստախանովական բանվորուհի Ռոզա Ղազարյանին, որը թողարկում է միայն գերազանց որակի արտադրանք, Կոժ-գալանտերեայի ֆաբրիկայի գերազանց բրիգադայի ղեկավար ստախանովական Կլարա Ավետիսյանին, Մետաքսի ֆաբրիկայի ստախանովական բանվորուհի Անդրինե Կրճիկյանին, որոնք իրենց ամբողջ ուժն ու եռանդը ոգևորությամբ նվիրաբերում են սոցիալիստական արդյունաբերության հետագա վերելքին։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ մեծ թվով կին մասնագետներ հաջողությամբ կատարում են պատասխանատու աշխատանք։ Սոնյա Սարվազյանը Երևանի Կահույքի ֆաբրիկայի դիրեկտորն է, Հռանուշ Բարսեղյանը ղեկավարում է Երևանի Մետաքսի ֆաբրիկան, ինժեներ Ելենա Կրիտյանը Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի հերթափոխի վարպետ է։

Գյուղի կոլեկտիվացումը հայ կնոջ համար բախտավոր կյանքի լայն ու լուսավոր ճանապարհ բացեց։

1933 թվականին Հարվածային կոլտնտեսականների առաջին համագումարում ընկեր Ստալինն ասաց. «Այստեղ բանը միայն այն չէ, որ կանայք կազմում են բնակչության կեսը։ Ամենից առաջ բանն այն է, որ կոլտնտեսային շարժումն առաջ քաշեց ղեկավար պաշ-

տոնների համար մի շարք երևելի և ընդունակ կանանց: Դիտեցեք համագումարը, նրա կազմը,—և դուք կտեսնեք, որ կանայք վաղուց արդեն հետամնաց վիճակից անցել են առաջավորների շարքերը: Կանայք կոլտնտեսություններում մեծ ուժ են»:

Շրջապատված բոլշևիկների պարտիայի և ընկեր Ստալինի հոգատարությամբ, անչափ աճել է գյուղացի կինը, զարգացել են նրա կազմակերպչական ունակությունները և տարեց-տարի բարձրանում է կնոջ դերը ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ:

Կոլխոզնիկուհին ակտիվորեն պայքարում է սոցիալիստական դաշտերի բերքատվությունը բարձրացնելու, հանրային անասունների գլխաքանակը և մթերատվությունն ավելացնելու համար: Նա մեծ սիրով և եռանդով իր բոլոր ուժերը ի սպաս է դնում բնության վերափոխման ստալինյան մեծ պլանն իրագործելու համար:

Հարյուրավոր կանայք ղեկավար աշխատանք են կատարում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մեջ: Տասնյակ կանայք աշխատում են իբրև կոլխոզվարչությունների նախագահներ և հաջողությամբ իրագործում են կոլխոզների առջև դրված խնդիրները: Հազարից ավելի կանայք ղեկավարում են դաշտավարական բրիգադներ, օղակներ, անասնապահական ֆերմաներ: Մեր կոլխոզներում, սովխոզներում և ՄՏ կայաններում աշխատում են բարձրագույն կրթությամբ 400-ից ավելի կին գյուղատնտեսներ, որոնք իրենց գիտելիքներով օգնում են կոլխոզներին աճեցնելու բարձր բերք:

Հայաստանի աշխատավորները հպարտանում են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներով: Նոր Բայազետի շրջանի Մոլոտովի անվան կոլխոզի օղակավարուհի Ցենյա Հարությունյանով, որը երեք հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 29 ցենտներ ծխախոտ, Հոկտեմբերյանի շրջանի Երրորդ Ինտերնացիոնալի անվան կոլխոզի օղակավարուհի Հոկտեմբերիկ Քոլոզյանով, որի օղակը ամեն տարի



աճեցնում է բամբակի բարձր բերք, Մարիամ Մարտիրոսյանի անունով, որը առաջին հայ կին Հերոսն է:

Արտաշատի շրջանի Դարղալու գյուղի կոլխոզնիկուհի Պայծառ Հովհաննիսյանը աճել և դարձել է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ: Անցյալ տարի նրա ղեկավարած օղակը յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 210 ցենտներ խաղող:

Հայ կինը ակտիվորեն օգտագործում է Ստալինյան Կոնստիտուցիայով իրեն տրված բոլոր իրավունքները: Մոտ 12.000 կին աշխատում են ժողովրդական լուսավորության բնագավառում: Կանայք հաջողությամբ ղեկավարում են դպրոցները, աշխատելով իբրև դիրեկտորներ և ուսմասվարներ: Նրանք մեծ սիրով ուսուցանում և դաստիարակում են մեր մատաղ սերունդը, տալով նրան կայուն գիտելիքներ:

Երկարամյա և անբասիր աշխատանքի համար 1357 ուսուցչուհիներ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով: 79 ուսուցչուհիներ պարգևատրվել են Լենինի շքանշանով:

Ավելի քան 1200 կին բժշկուհիներ իրենց գիտությունը և եռանդը նվիրաբերում են ժողովրդի առողջապահության գործին, նրանցից շատերը արժանացել են գիտության վաստակավոր գործչի, գիտության դոկտորի, ռեսպուբլիկայի վաստակավոր բժշկի կոչման: Շատ կին բժշկուհիներ բուժական հիմնարկներում պատասխանատու աշխատանք են կատարում:

Հայ կինը պատվավոր տեղ է գրավում նաև գիտության ասպարեզում: Ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկներում աշխատողների ընդհանուր թվի 52 տոկոսը կազմում են կանայք, որոնց թվում գիտության թեկնածուների և դոկտորների աստիճան ունեն 170-ից ավելի կանայք: Արաքսյա Բաբայանը Քիմիական գիտությունների դոկտոր է, պրոֆեսոր, Երևանի Զոովետինստիտուտի օրգանական քիմիայի ամբիոնի վարիչ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, Նվարդ

խոջանեկյանը դոցենտ է, Երևանի Ժդանովի անվան ռուսական Մանկավարժական ինստիտուտի դիրեկտոր, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։

Մոտ 5 հազար ուսանողուհիներ սովորում են ռեսպուբլիկայի բարձրագույն դպրոցներում։

Արվեստի և գրականության ասպարեզում կանայք քայլում են առաջավորների շարքերում և մեծ դեր են խաղում։

Քիչ չէ շնորհալի նկարչուհիների, քանդակագործուհիների թիվը։

Կանայք մեծ տեղ են գրավել պրոֆմիութենական աշխատանքներում։ Պրոֆմիութենական ակտիվի մոտ 30 տոկոսը կազմում են կանայք։

Սովետական երկրում հպարտ է հնչում «Մայր» բառը։ Մեր երկրում նա շրջապատված է հարգանքով ու սիրով։ Մեծ հոգատարություն ցուցաբերելով դեպի կին-մայրը, սովետական կառավարությունը տարեց-տարի ավելացնում է ծննդաբերական հիվանդանոցների և կոնսուլտացիաների թիվը։ Ռեսպուբլիկայում գործում են հարյուրավոր մանկապարտեզներ և մանկամսուրներ, որոնք սպասարկում են 30 հազարից ավելի երեխաների։

55 հազարից ավելի բազմազավակ մայրեր պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով և մեդալներով։ 570 մայրեր 10 և ավելի երեխաներ դաստիարակելու համար արժանացել են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչման։ Յուրաքանչյուր տարի Սովետական պետությունը Հայաստանի բազմազավակ և միայնակ մայրերին իբրև նպաստ վճարում է տասնյակ միլիոն ռուբլիներ։

Արթիկի շրջանի Պեմզաշեն գյուղի բնակչուհի՝ «Հերոսուհի մայր» Լ. Մխիթարյանը երեխաներին դաստիարակելու համար պետությունից ստացել է 90 հազար ռուբլի։

Հայաստանի կանայք Սովետական երկրի կանանց և ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին քայլում են խաղաղության և դեմոկրատիայի համար պայքարողների առաջին շարքերում։



Հայ կինը ակտիվ մասնակցություն է ցույց տալիս երկրի կառավարման գործում։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 269 դեպուտատներից 75-ը կին են։ Չորս հազարից ավելի կանայք ընտրված են տեղական Սովետներում, 34 կին գյուղսովետների և ավանային Սովետների նախագահներ են և հաջողությամբ ղեկավարում են գյուղի տնտեսական ու կուլտուրական կյանքը։

Հարյուրավոր կանայք կատարում են ղեկավար պարտիական և սովետական աշխատանք։

***

Միջազգային կոմունիստական կանանց օրը՝ Մարտի 8-ը զուգադիպում է համաժողովրդական մեծ տոնին, ՍՍՌ Միության Գերագույն Սովետի ընտրություններին։ Չտեսնված քաղաքական և աշխատանքային վերելք է տիրում մեր անծայրածիր Սովետական երկրում։ Սովետական ժողովուրդը է՛լ ավելի սերտորեն համախմբվելով կոմունիստական պարտիայի շուրջը, մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը՝ բուռն խանդավառությամբ պայքարում է մեր Հայրենիքի հետագա ծաղկման և մեր երկրում կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։ Օրեց-օր աճում է ժողովրդական լայն մասսաների քաղաքական ակտիվությունը։ Միլիոնավոր աշխատավորներ իրենց նախընտրական ժողովներում մեծ ոգևորությամբ առաջադրեցին ՍՍՌ Միության Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ։ Այդ ժողովներում դրսևորվեց սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, կոմունիստների և անպարտիականների բլոկի անխախտ միաձուլությունը։

Սովետական հզոր Միության բոլոր քաղաքներում և գյուղերում, գործարաններում և ֆաբրիկաներում, կոլխոզներում և սովխոզներում, գիտության, գրականության և արվեստի հիմնարկներում սովետական մարդիկ անհուն սիրով և խորը նվիրվածությամբ դեպուտատության համար իրենց առաջին թեկնածուին առաջա-

դրեցին հանճարեղ և իմաստուն առաջնորդ մեծ Ստալինին—մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողին և կազմակերպչին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրվել նույնպես հայ ժողովրդի լավագույն դուստրեր՝ ՀԿ(բ)Պ Երևանի Ստալինյան ռայկոմի առաջին քարտուղար Բերսաբե Գրիգորյանը, Երևանի Կագանովիչի անվան դպրոցի վաստակավոր ուսուցչուհի, Լենինի շքանշանակիր Կարինե Դրամբյանը, Էջմիածնի շրջանի Վ. Խաթունարխ գյուղի կոլխոզվարչության նախագահ Ռեբեկա Ղարիբյանը, Լենինականի Տեքստիլ կոմբինատի ստախանովական բանվորուհի Եվդոկիա Լիխաչևվան, Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտի ուսանողուհի, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանը և «Սովետ Էրմանիստանի» թերթի պատ. քարտուղար Սեդա Կադիմովան։

ՀԿ(բ)Պ Երևանի կազմակերպության Ստալինյան ռայկոմի առաջին քարտուղար Բերսաբե Գրիգորյանին ռայոնի աշխատավորությունը ճանաչում է որպես իրենց կարիքներին ու պահանջներին զգայուն և ուշադիր վերաբերվողի։ Որպես ռայկոմի առաջին քարտուղար, նա ցույց տվեց կազմակերպչական լավ ընդունակություններ, զգալի աշխատանք կատարեց ռայոնի ձեռնարկությունների կողմից արտադրական առաջադրանքները կատարելու գործում։

Էջմիածնի շրջանի աշխատավորները մեծ հարգանքով են վերաբերվում դեպի Ռեբեկա Ղարիբյանը, նրան ճանաչում է և ռեսպուբլիկայի աշխատավորությունը, որպես կոլխոզային արտադրության լավագույն կազմակերպիչներից մեկի և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատի։ Իններորդ տարին է նա ղեկավարում է Վ. Խաթունարխ գյուղի կոլխոզը։ Շնորհիվ նրա եռանդուն աշխատանքի, Վ. Խաթունարխ գյուղի կոլխոզը դեռ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մտավ միլիոնատեր կոլխոզների շարքը։ Ռեբեկա Ղարիբյանը պարգևատրված է Լենինի շքանշանով։



Կարինե Դրամբյանը իր ամբողջ կյանքը նվիրել է մեր մանուկ սերնդի ուսուցման և դաստիարակության վեհ գործին։ Սովետական կառավարությունը բարձր գնահատելով Դրամբյանի բազմամյա և անբասիր աշխատանքը, շնորհել է նրան Վաստակավոր ուսուցչուհու կոչում և պարգևատրել է Լենինի շքանշանով։

Ռուս մեծ ժողովրդի դուստր Եվդոկիա Լիխաչևվան մեծ հարգանք և հեղինակություն է վայելում Լենինականի Տեքստիլ կոմբինատի կոլեկտիվում։ Ե. Լիխաչևան անվանի մանածագործուհի է։

Ընտրությունների նախապատրաստման աշխատանքներում կանայք ցուցաբերում են քաղաքական մեծ ակտիվություն, մոտ 5 հազար կին աշխատում են ընտրական հանձնաժողովներում որպես անդամներ, տասնյակ հազարավոր կանայք որպես ագիտատորներ բոլշևիկյան ճշմարտացի խոսքը հասցնում են բոլոր ընտրողներին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների օրը՝ մարտի 12-ին, սովետական բոլոր կանայք տղամարդկանց հետ միասին միահամուռ կերպով կգնան դեպի քվեատուփերը, մեկ մարդու պես ձայն կտան կոմունիստների ու անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

Է՛լ ավելի միաձույլ համախմբվելով Լենինի-Ստալինի պարտիայի շուրջը, սովետական կինը ամբողջ ժողովրդի հետ միասին մեծ ու իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, հպարտ ու հաղթական քայլում է դեպի կոմունիզմ։

ՊԵՐՃԱՆՈՒՇ ՍԻՄՈՆՅԱՆ

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ

*Բացվում է գարունը։ Կոլխոզային գյուղացիությունը, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողները ձեռնամուխ են լինում Ստալինյան նոր հնգամյակի վերջին տարվա գարնան գյուղատնտեսական աշխատանքներին։ Մեր գյուղական բազմահազար ագիտատորների համար սկսվում է բեղմնավոր գործունեության մի նոր շրջան։*

*Սովետական Միության մեջ սոցիալիստական գյուղատնտեսությունը անշեղ վերելք է ապրում։ Անցյալ տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքը ամբողջությամբ վերցրած գերազանցեց նախապատերազմյան, 1940 թվականի մակարդակը. հացահատիկի բերքը կազմեց 7,6 միլիարդ փութ։ Նույնը պետք է ասել նաև տեխնիկական կուլտուրաների բերքի մասին։ Հաջողությամբ իրագործվում է հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը և այժմ երկրի կոլխոզները ավելի շատ մթերատու անասուններ ունեն, քան 1940 թվականին։*

*Պարտիան ու կառավարությունը մեր սոցիալիստական գյուղատնտեսության առջև դնում են նոր և ավելի մեծ խնդիրներ։ Բոլոր ընտրողներին ուղղած Համ. Կ(բ)Պ Կենտկոմի Դիմումի մեջ ասված է.* «Կոմունիստական պարտիան իր առաջ խնդիր է դնում ապահովել սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացումը, ամրապնդել մեր կոլխոզները, մեքենատրակտորային կայանները և սովխոզները: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ մեր հողագործությունը շա-



րունակ տա հացահատիկային, տեխնիկական և այլ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր կայուն բերք, որ է՛լ ավելի արագորեն զարգանա մեր հանրային անասնաբուծությունը, որ է՛լ ավելի բազմապատկվի կոլխոզների սոցիալիստական սեփականությունը, ավելի ունևոր և ավելի կուլտուրական ապրեն կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները»:

*Պարտիայի այս առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար վճռական նշանակություն կունենա ընթացիկ տարվա գարնանացանը և առհասարակ բոլոր գյուղատնտեսական աշխատանքները գերազանց կերպով անցկացնելը։*

*Այդ նպատակին պետք է ի սպաս դրվի ագիտացիոն-մասսայական աշխատանքը կոլխոզային գյուղում։*

*Բարձր բերքի համար մղվող պայքարում հատկապես վերջին տարիների ընթացքում մեր գյուղական ագիտատորները մեծ փորձ կուտակեցին։ Նրանք կատարելագործեցին իրենց աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքի փորձը է՛լ ավելի հարստացավ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակաշրջանում։ Անհրաժեշտ է լայնորեն օգտագործել այդ փորձը և դաշտային աշխատանքները սկսվելու հենց առաջին օրից կոլխոզային աշխատավորության մեջ, բրիգադաներում և օղակներում ապահովել ագիտացիոն-մասսայական աշխատանքի բարձր որակը։*

*Բնականաբար հարց է ծագում, թե ի՞նչից պետք է սկսել. ի՞նչը պետք է դառնա մեր ագիտատորների աշխատանքի, նրանց զրույցների առաջին թեման։ Նախ և առաջ անհրաժեշտ է մեր կոլխոզային մասսաներին լուսաբանել երկրի գյուղատնտեսության առջև, յուրաքանչյուր կոլխոզի, բրիգադայի, օղակի և առանձին կոլխոզնիկի առջև դրված խնդիրները գարնանացանի ընթացքում։*

*Այդ խնդիրները պարզ ու որոշակի շարադրված են կոլխոզային արտադրական պլաններում, բրիգադային*

և օղակային արտադրական առաջադրանքներում։ Անհրաժեշտ է ամենից առաջ յուրաքանչյուր կոլխոզնիկի պարզաբանել կոլխոզում պլանային աշխատանքի կարևորությունը։ «Կոլխոզը խոշոր տնտեսություն է,— ասել է ընկեր Ստալինը,— սակայն խոշոր տնտեսությունը չի կարելի վարել առանց պլանի։ Հողագործության մեջ հարյուրավոր և երբեմն էլ հազարավոր տընտեսություններ ընդգրկող խոշոր տնտեսությունը կարելի է վարել միայն պլանային ղեկավարության կարգով»։ Ագիտատորը կոլխոզնիկներին պետք է պարզաբանի, որ պլանը դա թվանշանների և առաջադրանքների թվարկում չէ միայն, այլ միլիոնավոր մարդկանց գործունեության հատակ, բոլշևիկյան աշխատանքի ծրագիր, հետևաբար այդ պլանի կատարման համար ակտիվ աշխատանք պետք է կատարի յուրաքանչյուր կոլխոզնիկ։

Դաշտային աշխատանքների հենց առաջին օրերից բոլոր բրիգադաներում, օղակներում և բոլոր կոլխոզնիկների միջև պետք է գործարար սոցիալիստական մրցություն ծավալել. դա ագիտատորի առաջնահերթ խնդիրն է։ Անցյալ տարի Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի կոլխոզնիկները բամբակի ռեկորդային բերք հավաքեցին նախ և առաջ հենց իրար միջև ծավալած սոցիալիստական մրցության շնորհիվ։ Այդ կոլխոզը պլանից ավելի պետությանը հանձնեց 550 տոննա բամբակ, նրա եկամուտը հասավ 7 միլիոն ռուբլու, բերքատվության առաջադրանքը կատարվեց 189 տոկոսով։ Իրենք՝ Բամբակաշատի կոլխոզնիկները մեծ հիացմունքով են խոսում ագիտատորներ Արտավազդ Ալեքսանյանի, Ասանեթ Սիմոնյանի և մյուսների մասին, որոնք ժամանակին կազմակերպեցին սոցիալիստական մրցության պայմանագրերի կնքումը բրիգադաների, օղակների և կոլխոզնիկների միջև, այնուհետև պարբերաբար կազմակերպում էին ստանձնած պարտավորությունների կատարման ստուգումը, գործի էին դրել պատվո-գիրքը, առաջավորների տախտակը, լույս էին ընծայում թռուցիկներ։ Այս բոլոր միջոցներով



նրանք ոգևորում և աշխատանքային սխրագործությունների էին կոչում բամբակագործ կոլխոզնիկներին և կոլխոզնիկուհիներին։ Ագիտատորների աշխատանքի արդյունքը շատ մեծ եղավ։ Աճեցրած բարձր բերքի համար 150 առավել առաջավոր կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ ներկայացված են կառավարական պարգևի։

Սոցիալիստական մրցությունը պետք է սկսվի դաշտային աշխատանքների հենց առաջին օրից։ Այդ նշանակում է, որ մեր գյուղական ագիտատորները նախապես պետք է կազմակերպեն մրցության պայմանագրերի մշակումը, քննարկումը՝ բրիգադաներում, օղակներում և ապահովեն այդ պայմանագրերի կատարումը ամենօրյա աշխատանքի ընթացքում։

Սոցիալիստական մրցությունը գործարար դարձնելու համար նախ և առաջ անհրաժեշտ է, որ կնքված պայմանագրերը լինեն կոնկրետ ու գործնական։ Ագիտատորը, յուրաքանչյուր բրիգադայի, օղակի և յուրաքանչյուր կոլխոզնիկի առջև պետք է դնի պարզ ու որոշակի նպատակ, պետք է պարզաբանի, թե նա ինչ խնդիրների համար է պայքարելու մրցության ընթացքում։ Մրցության պայմանագրերի մեջ առաջին հերթին տեղ պետք է գտնեն բարձր նորմաներ կատարելը, աշխատանքի բարձր որակը, ագրոտեխնիկական ձեռնարկումները ժամանակին և ճշգրիտ իրագործելը և այլն։

Սոցիալիստական մրցության ընթացքում ագիտատորն իր ուշադրությունը պետք է բևեռի հետ մնացողների վրա։ Պետք է կազմակերպի դրական փորձի փոխանակություն և հասնի այն բանին, որ բրիգադայում կամ օղակում ոչ մի հետ մնացող կոլխոզնիկ չլինի։

Մեր խնդիրն է բարձր բերք աճեցնել ոչ միայն առանձին բրիգադաների կամ օղակների հողամասերում, այլ կոլխոզի ունեցած ամբողջ ցանքատարածության վրա. ահա թե ինչի համար պետք է պայքարի գյուղական ագիտատորը։

Ագիտացիոն աշխատանքի համար թեմաներ ընտրելիս ագիտատորը մշտապես պետք է հիշի մեկ կա-

րևոր հանգամանք. նա ամենից առաջ իր զրույցները, ինչպիսի թեմայի շուրջ էլ որ լինի, պետք է սերտորեն շաղկապի կոլխոզի, բրիգադայի, օղակի և յուրաքանչյուր կոլխոզնիկի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Վերցնենք այսպիսի մի օրինակ— ագիտատորի համար շատ կարևոր թեմա է գյուղատնտեսության մեքանիզացիան։ Ինչպես հայտնի է, անցյալ տարի մեր երկրի կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները Սովետական պետությունից ստացան 150 հազար տրակտոր, 29 հազար կոմբայն, 64 հազար բեռնատար ավտոմեքենա, մեկ միլիոն 600 հազարից ավելի գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ մեր սոցիալիստական արդյունաբերությունն անցյալ տարի գյուղատնտեսությանը տվեց 3—4 անգամ ավելի տեխնիկական միջոցներ։

Այս ամենի մասին պատմելով կոլխոզնիկներին, ագիտատորը կոնկրետ կերպով պետք է խոսի տվյալ կոլխոզի գյուղատնտեսական աշխատանքները էլեկտրիֆիկացնելու, տրակտորները, կոմբայնները, կալսիչները և գյուղատնտեսական մյուս մեքենաները արդյունավետ ձևով օգտագործելու, դաշտային աշխատանքների մեքենայացման ծավալն ընդարձակելու կարևորության մասին։ Կասկածից վեր է, որ ագիտատորը շատ բան կարող է անել հիշատակված մեքենաներն արտադրողաբար օգտագործելու, հետևաբար գյուղատնտեսական աշխատանքների մեխանիզացիան ընդարձակելու համար։

Մեր սոցիալիստական գյուղատնտեսության մեջ հետզհետե ավելի լայն չափերով մուտք է գործում սովետական առաջավոր գիտությունը, միչուրինյան ագրոբիոլոգիան։ Մեր կոլխոզները արմատավորում են ցանքաշրջանառությունը, իրականացնում են բնության վերափոխման Ստալինյան պլանը, ստեղծում են դաշտապաշտպան անտառաշերտեր, կառուցում են լճակներ ու ջրամբարներ։ Այս հարցերը մշտապես պետք է գտնվեն



ագիտատորի ուշադրության կենտրոնում։ Հարկավոր է կոլխոզնիկներին և կոլխոզնիկուհիներին պարզաբանել ագրոտեխնիկայի նորությունները, գյուղատնտեսությունը վարելու կուլտուրական ձևերն ու մեթոդները, առաջավորների փորձը, մեր սովետական գիտության նվաճումները։

Ռեսպուբլիկայի մի շարք կոլխոզներում արդեն ըսկըսվել են դաշտային աշխատանքները։ Շուտով ամենուրեք կսկսվի վար ու ցանքը։ Որպեսզի ագիտատորը իր աշխատանքի հենց առաջին օրերում հաջողության հասնի, նա պետք է նախապես պատրաստվի։ Նախքան դաշտային աշխատանքներն սկսվելը ագիտատորը, պարտիական կազմակերպությունների օգնությամբ պետք է հոգ տանի, որ դաշտ դուրս գալու հենց առաջին օրը իր ձեռքում ունենա համապատասխան նյութեր, լրագիր, գրականություն, իլյիչովկա և այլն։

Դա հնարավորություն կտա նրան ավելի հետաքրքիր դարձնել իր զրույցը կոլխոզնիկների հետ։

Հսկայական ոգևորություն է ապրում մեր կոլխոզային գյուղացիությունը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակ ամբողջ ժողովրդի հետ միասին նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների Ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։ Կոլխոզային գյուղի աշխատավորները, ի պատիվ ընտրությունների, հսկայական աշխատանք կատարեցին գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։ Այժմ սկսվում է բարձր բերքի համար մղվող պայքարի վճռական շրջանը։ Ագիտատորների համար մեծ ու շնորհակալ գործ է բարձր բերքի համար, հայրենիքին ավելի շատ պարենամթերք և հումք տալու համար պայքարի ելած հարյուրավոր և հազարավոր կոլխոզնիկների մեջ ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանք կատարելը։ Թող ուրեմն յուրաքանչյուր ագիտատոր պատվով կատարի Լենինի-Ստալինի պարտիայի կողմից իր առջև դրված պատվավոր խնդիրը։

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ի. Տ. ԳՈԼՅԱԿՈՎ.— Սովետական ընտրական սիստեմը ամենադեմոկրատականն է աշխարհում: *48 էջ, գինը 1 ռ.:*

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ.— Դաստիարակության և ուսուցման մասին: *96 էջ, գինը 3 ռ.:*

Վ. Ֆ. ՄՈՐՈԶՈՎ.— Ս. Մ. Կիրովը բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության ականավոր գործիչ: *42 էջ, գինը 1 ռ.:*

Ս. ԿԱՐԱԳՅՈԶՅԱՆ.— Բամբակագործություն: *146 էջ, գինը 7 ռ. 50 կ.:*

Վ. Ա. ՉԵՊՐԱԿՈՎ.— Հարկադիր աշխատանքը կապիտալիստական երկրներում: *43 էջ, գինը 1 ռ.:*

Ա. ՌՈՒԽԻԿՅԱՆ.— Միչուրինյան անասնաբույծների նվաճումները գյուղատնտեսական նոր ցեղեր ստեղծելու գործում: *18 էջ, գինը 1 ռ.:*

—

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*ՎՖ 02552* *Պատվեր № 153* *Տիրաժ 9.450*

*Հայպոլիգրաֆհրատի վաչյումյան № 2 տպարան, Երևան*